Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 5 ՄԱՐՏ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### Նյութեր զրույցների համար



### Առաջավորների փորձից



### Օգնություն ագիտատորներին



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:





# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

1956 թվականի փետրվարի 14-ին մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում իր բեղմնավոր աշխատանքը սկսեց ՍՄԿՊ XX համագումարը: Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր XX համագումարն սկսեց է՛լ ավելի միասնական ու համախմբված, ստեղծագործական անսպառ ուժով և էներգիայով լի, սերտորեն համախմբված իր Լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը:

Սովետական ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ և ստեղծագործական վերելքով դիմավորեց փառապանծ Կոմունիստական պարտիայի XX համագումարը, որը բացառիկ կարևոր էտապ է կոմունիզմի ուղիով սովետական ժողովրդի առաջընթացի գործում: Համագումարը մեծագույն ոգևորությամբ լսեց ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի առաջին քարտուղար Ն. Ս. Խրուշչևի զեկուցումը: Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կո-

միտեի հաշվետու զեկուցման մեջ տրված է մեր երկրի ներքին և արտաքին դրության մարքսիստական-լենինյան խոր վերլուծությունը, ամփոփված են մեր ժողովրդի կյանքի և պայքարի արդյունքները ՍՄԿԿ XIX համագումարից հետո ընկած շրջանում, նշված է մեր Հայրենիքի հետագա առաջընթացի հոյակապ ծրագիրը։

Հաշվետու ժամանակաշրջանը չնայած ընդգրկում է ոչ այնքան երկար ժամանակ՝ ընդամենը 3 տարի և 4 ամիս, բայց պարտիայի կատարած աշխատանքի ծավալով, մեր երկրում և նրա սահմաններից դուրս տեղի ունեցած իրադարձությունների նշանակությամբ այն հանդիսանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման, մեր երկրի հզորության ամրապնդման, ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության և ժողովուրդների անվտանգության ապահովման համար նրա մղած պայքարի կարևորագույն ժամանակաշրջաններից մեկը։ Ներքին քաղաքականության բնագավառում,— ինչպես նշվեց ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման մեջ,— հաշվետու ժամանակաշրջանը եղել է կոմունիզմի ուղիով մեր հասարակության առաջընթացի,



ժողովրդական տնտեսության և կուլտուրայի նոր, հզոր վերելքի, հինգերորդ հնգամյա պլանի խնդիրների կատարման ժամանակաշրջան։ Պարտիան քննադատաբար գնահատելով գյուղատնտեսության, արդյունաբերության ասպարեզում գոյություն ունեցող դրությունը, համարձակորեն բացահայտեց տնտեսական, պետական ու պարտիական գործունեության տարբեր բնագավառներում եղած թերությունները, խորտակեց հնացած պատկերացումները, վճռականորեն դեն շպրտեց այն ամենը, ինչ հնացած էր, արգելակում էր մեր առաջընթացը։

Պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումները ապահովեցին սոցիալիստական էկոնոմիկայի անշեղ աճը, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացումը։ Սովետական Միությունը, չնայած պատերազմի հասցրած ծանր վնասներին, վերջին 26 տարում արդյունաբերության արտադրանքն ավելացրել է 20 անգամ, այն ժամանակ, երբ ԱՄՆ-ը գտնվելով բացառիկ նպաստավոր պայմաններում, արտադրությունը կարողացել է բարձրացնել հազիվ երկու անգամից քիչ ավելի։ Սովետական Միությունը արդյունաբերական

արտադրանքի ընդհանուր ծավալով բռնում է 2-րդ տեղը աշխարհում։ Ղեկավարվելով մեծ Լենինի պատգամներով, Սովետական Միության Կոմունիստական պարտիան մշտական հոգատարություն է ցուցաբերել և ցուցաբերում ծանր արդյունաբերության առավել աճի նկատմամբ, որը սոցիալիստական էկոնոմիկայի բոլոր ճյուղերի զարգացման, մեր Հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման, ժողովրդի բարեկեցության բարձրացման հիմքն է։

Հինգերորդ հնգամյա պլանը արդյունաբերության գծով կատարվեց ժամկետից շուտ՝ 4 տարի 4 ամսում, զգալիորեն ավելացավ մետաղի, վառելիքի, էլեկտրաէներգիայի արտադրությունը, ծանր ինդուստրիայի մյուս ճյուղերի արտադրանքի թողարկումը։

Հնգամյակում ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքը ավելացել է 85 տոկոսով, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը՝ 91 տոկոսով։ 1955 թվականին մեր երկիրը 3,2 անգամ ավելի արդյունաբերական արտադրանք է տվել, քան 1940 թվականին։ Առավել արագ տեմպերով զարգացավ մեքենաշինությունը։ Մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմա-



տությամբ, աճել է 2,2 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 4,7 անգամ։ Առաջին հնգամյակի սկզբից ՍՍՌՄ էլեկտրաէներգիայի արտադրությունն աճել է 34 անգամ։ Հինգերորդ հնգամյակի տարիներին արդյունաբերության կապիտալ ներդրումները, 4-րդ հնգամյակի համեմատությամբ, ավելացան 94 տոկոսով։

Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը 1955 թվականին համարյա 2 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Արդյունաբերական արտադրանքի ամբողջ աճման ավելի քան 2/3-ն ստացվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Հնգամյակի ընթացքում արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքն իջեցվեց 23 տոկոսով, բարձրացավ արտադրանքի որակը, ընդլայնվեց նրա նոմենկլատուրան և ասորտիմենտը։

Պարտիան իրագործեց մի շարք կարևոր միջոցառումներ, որոնք ուղղված են արդյունաբերության աշխատանքի հետագա բարելավման և առաջին հերթին գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումները արտադրության մեջ արմատավորելու նպատակին։ ՍՍՌՄ արդյունաբերությունը 6-րդ հըն-

գամյակն է թևակոխում արտադրության հետագա աճման և կատարելագործման ավելի մեծ հնարավորություններով, քան առաջ։ 1960 թվականին արդյունաբերական արտադրության մակարդակը, 1955 թվականի համեմատությամբ, պետք է բարձրանա մոտավորապես 65 տոկոսով, ընդսմին արտադրության միջոցների արտադրությունը պետք է ավելացվի 70 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 60 տոկոսով։

Կատարելով 6-րդ հնգամյա պլանը, մենք ՍՍՌՄ արդյունաբերական արտադրության մակարդակը, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, կբարձրացնենք ավելի քան 5 անգամ։

Պարտիայի XX համագումարը նշանակալից հաջողություններով դիմավորեցին նաև սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները։ Հաշվետու ժամանակաշրջանում պարտիայի առջև ծառացավ անհետաձգելի, համաժողովրդական խնդիր՝ խիստ ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումներում բացահայտվեցին գյուղատնտեսության ղեկավարման գործի լուրջ թերությունները և սխալները, մշակվեց հացահատիկի և անասնաբուծական մթերքների ար-



տադրությունը ավելացնելու ընդարձակ ծրագիր։

Սովետական ժողովուրդը ձեռք է բերել առաջին խոշոր արդյունքները՝ այդ ծրագրի կենսագործման ուղղությամբ։ 1954 և 1955 թվականներին կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ կազմեցին 34,4 միլիարդ ռուբլի։ Այդ երկու տարում կոլտնտեսությունները, ՄՏ կայաններն ու սովխոզները ստացան 404 հազար տրակտոր (վերածած 15 ուժանոցի), 228 հազար բեռնատար ավտոմեքենա, 83 հազար հացահատիկային կոմբայն և մեծ քանակությամբ այլ տեխնիկա։

Հանրային արտադրության զարգացմամբ կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և հանրային արտադրության ապրանքայնությունն ավելացնելու ուղղությամբ ձեռնարկած միջոցառումների և արտադրանքի աճի շնորհիվ կոլտնտեսությունների եկամուտները վերջին 2 տարում աճեցին 20 միլիարդ ռուբլով։ ՄՏ կայաններում ստեղծվել են մեխանիզատորական մշտական կադրեր, քաղաքներից ու արդյունաբերական կենտրոններից ՄՏ կայաններում, կոլտնտեսություններում և սովխոզներում աշխա-

տանքի են ուղարկվել գյուղատնտեսության ավելի քան 120.000 մասնագետներ, 20.000-ից ավելի կոմունիստներ քաղաքներից գյուղ են ուղարկվել և աշխատում են որպես կոլտնտեսությունների նախագահներ։ Մտցվել է գյուղատնտեսության պլանավորման նոր կարգ, միջոցներ են ձեռնարկվել սովխոզների աշխատանքը բարելավելու, պետական հին տնտեսություններն ամրապնդելու և նորերն ստեղծելու ուղղությամբ։ Գյուղատնտեսության հետագա զարգացման ասպարեզում պարտիայի մշակած միջոցառումների իրականացումը թույլ տվեց առաջին խոշոր առաջընթաց քայլ կատարել հացահատիկի և տեխնիկական կուլտուրաների արտադրությունն ավելացնելու գործում։

Բազմակողմանիորեն ուսումնասիրելով գյուղատնտեսական մթերքների ասպարեզում պետության պահանջմունքները, ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը խնդիր դրեց՝ կարճ ժամկետում խիստ ավելացնել հացահատիկի արտադրությունը և երկու, երկուսից ավելի անգամ բարձրացնել անասնաբուծական հիմնական մթերքների արտադրությունը։ Գյուղատնտեսության հետագա զարգացման համար հատկապես կարևոր նշանակություն ունեցավ պարտիայի որոշ-



մամբ ձեռնարկված՝ խոպան ու խամ հողերի յուրացումը։ Ղազախստանում, Սիբիրում ու երկրի այլ շրջաններում նախատեսված էր մինչև 1956 թվականը յուրացնել առնվազն 28—30 միլիոն հեկտար նոր հողեր, որից մենք կարող ենք տարեկան ստանալ միջին հաշվով առնվազն 2 միլիարդ փութ հացահատիկ։ Խոպան ու խամ հողերի յուրացման շրջանները մեկնած 350 հազար սովետական հայրենասերների, կոլտնտեսականների, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողների անձնվեր աշխատանքի շնորհիվ, բանվոր դասակարգի ակտիվ օգնության շնորհիվ խոպան հողերի հերկման առաջադրանքը կատարվեց։ 1954 և 1955 թվականներին արդեն հերկված էր 33 միլիոն հեկտար հող։

Լուրջ աշխատանք է կատարվել եգիպտացորենի՝ հացահատիկային և կերային կարևորագույն կուլտուրայի արմատավորման ուղղությամբ։ 1955 թվականին ցանվեց համարյա 18 միլիոն հեկտար եգիպտացորեն, այսինքն 13 միլիոն 600 հազար հեկտարով ավելի, քան 1954 թվականին։ Դրա շնորհիվ զգալիորեն բարելավվեց անասնաբուծության ապահովումը սիլոսով և խտացրած կերով։

Պարտիան սովետական ժողովրդին պայքարի է հանել 6-րդ հնգամյակում հացահատիկի տարեկան արտադրությունը 11 միլիարդ փթի հասցնելու համար։ Լուծելով այդ խնդիրը, մեր երկրում կստեղծվի պարենի առատություն բնակչության աճող պահանջմունքները լրիվ բավարարելու և արդյունաբերությունը հումքով ապահովելու համար։

Պարտիայի առջև կանգնած ամենադժվարին և միևնույն ժամանակ առավել անհետաձգելի խնդիրներից մեկը անասնաբուծության հետագա զարգացման, անասնաբուծական մթերքների արտադրության ու մթերումների ավելացման խնդիրն էր, որի ուղղությամբ պարտիան և կառավարությունը մի շարք միջոցառումներ մշակեցին, անհրաժեշտ գտնելով բարձրացնել կոլտնտեսությունների նյութական շահագրգռվածությունը։ Ընդունվել և իրականացվում է անասնաբուծության աշխատանքների մեքենայացման, անասնապահական շենքերի շինարարության լայն պլան, աշխատանք է կատարված անասնաբուծական տնտեսությունների վճռական տեղամասերը կադրերով ամրապնդելու ուղղությամբ։

Մեր սոցիալիստական ինդուստրիան գյուղատնտեսությանը զինում է միլիոնա-



վոր ժամանակակից մեքենաներով։ Դաշտավարության կարևորագույն աշխատանքների մեքենայացման պրոբլեմը մեծամասամբ լուծված է։ Այժմ խնդիր է դրված՝ ամենակարճ ժամկետում առանձին աշխատանքների մեքենայացումից անցնել գյուղատնտեսական ամբողջ արտադրության, ներառյալ նաև անասնաբուծության, կոմպլեքսային մեքենայացմանը։

Գյուղատնտեսության բոլոր բնագավառները ապահովված են բարձր որակավորում ունեցող կադրերով։ 1955 թվականին գյուղատնտեսության մեջ աշխատում էին բարձրագույն ու մասնագիտական կրթությամբ ավելի քան 400 հազար մասնագետներ։ Գյուղատնտեսության բնագավառում պարտիայի մշակած միջոցառումների իրագործման շնորհիվ մեծամասամբ ստեղծվել են բոլոր պայմանները, որպեսզի ամենակարճ ժամկետում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնենք երկրի աճող պահանջմունքները բավարարող չափերով։ Արդյունաբերության և գյուղատնտեսության աճի հիման վրա անշեղորեն բարձրանում է սովետական ժողովրդի կենսամակարդակը։ Հինգերորդ հնգամյակի տարիներին ՍՍՌՄ ազգային եկամուտը ավելացել է 68 տոկո-

տով։ Այդ ժամանակաշրջանում բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը աճել է 39 տոկոսով, իսկ կոլտնտեսականների ռեալ եկամուտները՝ 50 տոկոսով։ Հնգամյակի ընթացքում պետությունը 689 միլիարդ ռուբլի է ծախսել սոցիալական ապահովագրության, բանվորների ու ծառայողների արձակուրդների, հանգստյան տների ու սանատորիաների ուղեգրերի, թոշակների վճարման, բժշկական օգնության համար և այլն։ Սոցիալիստական էկոնոմիկայի վերելքի հիման վրա տարեցտարի աճել է ժողովրդական սպառման ծավալը։ 1955 թվականին պետական ու կոոպերատիվ առևտրի ցանցը բնակչությանը 1,9 անգամ ավելի շատ ապրանքներ է վաճառել, քան 1950 թվականին։ Այս բոլորը նշանակալից հաջողություններ են, բայց մեզանում դեռևս սպառման առարկաների լիառատություն չկա, բնակարանային պակաս կա, դեռևս լուծված չեն աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման հետ կապված շատ հարցեր։ «Մեր խնդիրն է,— ասաց ընկեր Խրուշչևը իր զեկուցման մեջ,— հենվելով ծանր ինդուստրիայի առավել աճի վրա, հասնել գյուղատնտեսության շեշտակի վերելքի, ավելի ա-



րագորեն առաջ մղել թեթև ու սննդի արդյունաբերությունը»։

Վեցերորդ հնգամյակի վերաբերյալ Դիրեկտիվներում խնդիր է դրվում բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը բարձրացնել մոտավորապես 30 տոկոսով, իսկ կոլտնտեսականների եկամուտներն առնվազն 40 տոկոսով։ Վեցերորդ հնգամյակում ամբողջ ժողովրդի նյութական բարեկեցության լուրջ բարձրացման հետ միաժամանակ կենսագործվելու են այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացումը, աշխատանքային օրվա տևողության կրճատումը, կենսաթոշակների գործի կարգավորումը, աշխատավորների բնակարանային պայմանների արմատական բարելավումը և այլ միջոցառումներ։ Պարտիայի այդ միջոցառումների մասին ընկեր Ն. Ս. Խրուշչևի հայտարարությունը միահամուռ հավանությամբ դիմավորվեց ամբողջ սովետական ժողովրդի կողմից և աշխատանքային նոր խանդավառություն առաջ բերեց ժողովրդա-տնտեսական պլանների կատարման ու գերակատարման համար մղվող պայքարում։

Ինչպես ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման,

այնպես էլ դելեգատների ճառերի մեջ պատշաճ տեղ հատկացվեց սովետական կուլտուրայի և գիտության աննախընթաց վերելքին։ ՍՍՌՄ-ում ընդհանուր յոթնամյա ուսուցում է իրագործված ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում, իսկ խոշորագույն քաղաքներում հիմնականում մտցված է 10-ամյա կրթություն։ Վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ Դիրեկտիվներում նախատեսված է՝ հիմնականում ընդհանուր միջնակարգ կրթություն իրագործել բոլոր քաղաքներում և գյուղական վայրերում։ Որոշում է ընդունված, նոր ուսումնական տարվանից սկսած, ուսման վարձը վերացնելու մասին։

Մեր երկրում հսկայական աշխատանք է կատարված ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների համար մասնագետների պատրաստման ուղղությամբ։ Հինգերորդ հնգամյակի ընթացքում ՍՍՌՄ ԲՈՒՀ-երը տվել են ավելի քան 1 միլիոն 120 հազար մասնագետ, այսինքն՝ 72 տոկոսով ավելի, քան 4-րդ հնգամյակում։ Երեկոյան և հեռակա ԲՈՒՀ-երը պատրաստել են ավելի քան 260.000 մասնագետ, բարելավվել է միջին որակավորման մասնագետների պատրաստումը։ Ոչ մի հասարակարգ այնքան շահագրգռված չէ գիտության զար-



գացմամբ և նրա զարգացման համար այնպիսի պայմաններ չի ստեղծում, որքան սովետական սոցիալիստական կարգը։ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշտական հոգատարության շնորհիվ մեր գիտնականները աչքի ընկնող արդյունքների են հասել գիտության մի շարք բնագավառներում, կարճ ժամկետում լուծել են ատոմային էներգիա ստանալու պրոբլեմը։ Ստեղծել են տեխնիկական մտքի այնպիսի աչքի ընկնող ստեղծագործություններ, ինչպիսիք են էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, զանազան գործիքներն ու մեխանիզմները։ Մեր գիտնականները հաջողությամբ աշխատում են ժողովրդատնտեսական կարևորագույն պրոբլեմների լուծման վրա և իրենց բեղմնավոր գործունեությամբ լուրջ ավանդ են մտցնում կոմունիզմի կառուցման գործում։ Վեցերորդ հնգամյակում ավելի լայն թափ կընդունի կուլտուրական շինարարությունը, նոր բարձրության կհասնի մեր գիտությունը։

Համագումարում արտասանված բոլոր ճառերը տոգորված են սովետական կարգի ուժի և կենսունակության նկատմամբ ունեցած խոր հավատով և մեծագույն հոգատարությամբ։ Կոմունիստական պարտիայի աշ-

խատանքի կարևորագույն արդյունքներից մեկն էլ պարտիայի XIX և XX համագումարների միջև ընկած շրջանում հանդիսանում է մեր հասարակության բարոյա-քաղաքական միասնության, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության հետագա ամրապնդումը։

Եղբայրական ռեսպուբլիկաների էկոնոմիկայի զարգացումը բնութագրում են հետևյալ տվյալները։ Ղազախական ՍՍՌ տերիտորիայում գտնվող ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1955 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է 33 անգամ, Վրացական ՍՍՌ-ում՝ 27 անգամ, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 37 անգամ, Հայկական ՍՍՌ-ում՝ 41 անգամ, Տաջիկական ՍՍՌ-ում՝ 24 անգամ և այլն։ Մեծ են մեր ռեսպուբլիկաների նվաճումները ազգային կուլտուրայի զարգացման գործում։

Համագումարը ամփոփելով սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումները պարտիայի ձեռնարկած վիթխարի միջոցառումների կենսագործման համար մղվող պայքարում, միաժամանակ նշեց մեր աշխատանքներում եղած թերությունների վերաց-





ման կոնկրետ ուղիները։ Պարտիան սովորեցնում է՝ երբեք չնիրհել դափնիների վրա, չհանգստանալ ձեռք բերված հաջողություններով։ Ընդհակառակը, ելնելով մեր Հայրենիքի հետագա հզոր առաջընթացի հոյակապ խնդիրներից, պարտիան մոբիլիզացնում է սովետական ժողովրդի բոլոր ուժերը, գործի դնում բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները ժողովրդական տնտեսության հետագա անշեղ վերելքի, գիտության և կուլտուրայի զարգացման համար։

Ընկ. Ն. Ս. Խրուշչևի հաշվետու զեկուցման մեջ, ինչպես նաև պարտիայի և կառավարության ղեկավարների ճառերում նշվել է, որ XIX և XX համագումարների միջև ընկած ժամանակաշրջանը հանդիսացել է մեր երկրի հեղինակության աճման, միջազգային հարցերի լուծման գործում նրա դերի բարձրացման, սոցիալիզմի լագերի երկրների դիրքերի ամրապնդման և կապիտալիզմի լագերի դիրքերի թուլացման ժամանակաշրջան։

Ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման մեջ տըրված է ժամանակակից միջազգային դրության կարևորագույն սկզբունքային հարցերի մարքսիստական խոր վերլուծումը, երկու սիստեմների խաղաղ համագործակցության, ժամանակակից էտապում պատերազմների

կանխման հնարավորության, տարբեր երկրների՝ սոցիալիզմին անցնելու ձևերի պարզաբանումը։ Այդ և նման արդի կենսական հարցերի տեսական մշակումը նոր մեծագույն ներդրում է հանդիսանում մարքսիզմ-լենինիզմի գանձարանում։ Համագումարում փաստական հարուստ նյութերով ցույց տրվեց, թե ինչպես տարեցտարի աճում, ամրապնդվում և զարգանում է սոցիալիստական լագերը, որի երկրները սերտ համագործակցությամբ առաջ են գնում պատմական մեծագույն պրոգրեսի ուղղությամբ։ Սովետական Միությունը, ինչպես և սոցիալիզմի լագերի մյուս երկրների ժողովուրդները միահամուռ հանդես են գալիս երկու սիստեմների խաղաղ գոյակցության, միջազգային բոլոր չլուծված հարցերը բանակցությունների միջոցով լուծելու օգտին։

Միանգամայն այլ պատկեր է ներկայացնում կապիտալիզմի լագերը։ Այժմ արդեն միայն կույրերը կարող են չտեսնել, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը շարունակում է խորանալ, գնալով սրվում են կապիտալիզմի սիստեմի հակասությունները, ուժեղանում են տնտեսական և սոցիալական ցնցումները։ Այդ բարդ իրադրության մեջ իմպերիալիստական երկրների կառավարող



շրջանները ելք են որոնում «սառը պատերազմի», սպառազինությունների մրցավազքի և ռազմական նոր ավանտյուրաների մեջ։

Բայց իմպերիալիզմի հանցավոր պլանները չեն կարող կանգնեցնել խաղաղության և դեմոկրատիայի համար ժողովրդական մասսաների հզոր շարժումը, որի ավանգարդում գնում են կոմունիստական ու բանվորական պարտիաները։

Միջազգային հարաբերությունների մեջ վճռական նշանակություն ունի սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության, ազգային-ազատագրական շարժման ուժերի անշեղ ամրապնդումը։ Սոցիալիզմի միջազգային լագերը իր վճռական ազդեցությունն է գործում միջազգային բոլոր իրադարձությունների վրա։ Միջազգային հարաբերություններում բացառիկ կարևոր նշանակություն ունի Արևելքի ժողովուրդների դերի աճումը, որոնք թոթափելով իմպերիալիզմի լուծը, ձգտում են բարեկամության սոցիալիզմի լագերի երկրների հետ։ Այդ բանի փայլուն վկայությունն է հանդիսանում Հնդկաստանի և Բիրմայի ներկայացուցիչների այցելությունը Սովետական Միություն և ընկերներ Ն. Ա. Բուլգանինի ու Ն. Ս. Խրուշ-

չեր այցելությունը Հնդկաստան, Բիրմա և Աֆղանստան։ Սովետական Միությունը ինչպես միշտ, այնպես էլ առաջիկայում վարելու է խաղաղության, տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականություն, որը բխում է ինչպես մեր ժողովրդի, սոցիալիզմի լագերի երկրների, այնպես էլ ամբողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդների շահերից։

Համագումարը մեծ ուշադրություն նվիրեց նաև իդեոլոգիական հարցերին և նշեց, որ չնայած մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդայի գործի որոշ հաջողություններին, իդեոլոգիական աշխատանքի վիճակը ամբողջությամբ վերցրած չի կարող մեզ բավարարել։ Մի շարք պարտիական կազմակերպությունների պրակտիկայում մինչև այժմ չի հաղթահարված այնպիսի խոշոր թերություն, ինչպիսին իդեոլոգիական աշխատանքի կտրվածությունն է կյանքից, կոմունիստական շինարարության պրակտիկ, ամենօրյա խնդիրներից։

Համագումարը պահանջեց բոլոր պարտիական կազմակերպություններից բարձրացնել իդեոլոգիական աշխատանքը, այն ծառայեցնել կոմունիզմի կառուցման վեհ



խնդիրներին, անհաշտ պայքար մղել բուրժուական իդեոլոգիայի դեմ, ուժեղացնել աշխատանքը աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ և մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ մղվող պայքարում։

Սովետական ժողովուրդը քաջ հասկանում է, որ իր բոլոր հաջողություններով նա պարտական է կոմունիստական պարտիայի ճիշտ քաղաքականությանը, նրա կազմակերպական անխոնջ գործունեությանը։ Ժողովրդին անձնվիրաբար ծառայելով՝ ՍՄԿՊ-ն նվաճել է նրա անսահման սերը և համակրանքը, բարձրացրել է իր հեղինակությունը ոչ միայն մեր երկրի աշխատավորների, այլև միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մեջ, Արևելքի և Արևմուտքի ժողովրդական մասսաների մեջ։

Հաշվետու ժամանակաշրջանում է՛լ ավելի է աճել մեր պարտիայի ուժը, ամրապնդվել նրա շարքերի միասնությունը։

Համագումարի հաշվետվության և բոլոր ելույթների մեջ ընդգծվում է Կենտրոնական Կոմիտեի կատարած հսկայական աշխատանքը պարտիական կյանքի լենինյան նորմաների վերականգնման ուղղությամբ, ղեկավարման կոլեկտիվության սկզբունքի հե-

տևողական կենսագործման ուղղությամբ։ Կենտկոմը վճռաբար հանդես եկավ մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ անհատի պաշտամունքի դեմ, որի տարածումը հանգեցրել էր ժողովրդական մասսաների և պարտիայի մեջ կոլեկտիվ ղեկավարման դերի թերագնահատմանը։ Ոչ մի թշնամի և ոչ մի դժվարություն սարսափելի չեն մեր պարտիայի համար, քանի որ նա միասնական, միաձույլ է։ Նա ի վիճակի է լուծելու ամենաբարդ խնդիրները, չի վախենում ոչ մի դժվարությունից, այլ համարձակորեն առաջնորդում է ժողովրդին դեպի մեծագույն նպատակի իրականացումը, դեպի կոմունիզմ։ Սովետական ժողովուրդը լի է հաստատուն վճռականությամբ այսուհետև ևս անշեղորեն առաջ ընթանալու Կոմունիստական պարտիայի նշած ուղիով և նորանոր նվաճումներ ձեռք բերելու կոմունիզմի կառուցման ճանապարհին։

---

## ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ


### ՄԱՐՈ ՄԵԼԻՔՅԱՆ

ՀԿՊ Երևանի քաղաքային Կոմիտեի
դպրոցական բաժնի վարիչ


Սովետական ժողովուրդը կանանց Միջազգային օրը՝ Մարտի 8-ը նշում է քաղաքական և աշխատանքային այն բուռն խանդավառության պայմաններում, որ առաջ է բերել մեր երկրում փառապանծ Կոմունիստական պարտիայի XX համագումարը։

Քաղաքական և աշխատանքային այն հսկայական վերելքը, որով սովետական մարդիկ դիմավորեցին պարտիայի համագումարը, կրկին ու կրկին անգամ վկայեց մեր երկրի աշխատավորների սերտ համախմբվածությունը իր հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջը։

Սովետական ժողովուրդը պարտիայի XX համագումարը դիմավորեց նոր և մեծ հաջողություններով։

Վերջին քառորդ դարում մեր երկիրը, շնայած ժողովրդական տնտեսության պատե-

րազմի հասցրած մեծ վնասին, արդյունաբերական արտադրությունն ավելացրեց ավելի քան 20 անգամ, մինչդեռ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք գտնվում էին ավելի նպաստավոր պայմաններում, կարողացան արդյունաբերական արտադրությունն ավելացնել միայն երկու անգամից մի փոքր ավելի, իսկ կապիտալիստական մյուս երկրների արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած՝ նույնիսկ այդքան աճ էլ չտվեց։

Կոմունիստական պարտիայի հանճարեղ ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հինգերորդ հնգամյակում հասավ արդյունաբերության բոլոր ճյուղերի նոր հուժկու վերելքի, հնգամյակը կատարելով ժամկետից շուտ՝ չորս տարի և չորս ամսում։

Մեր Հայրենիքի հզորության ամրապնդման համար մղվող պայքարի ընդհանուր գործում, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում մեծ է մեր պանծալի սովետական կանանց ավանդը։ Մեր երկիրը պատմության մեջ առաջինը ազատագրեց կանանց և նրանց դարձրեց հասարակության իրավահավասար անդամներ, անսահմանափակ հնարավորություններ ստեղծեց նրանց ընդունակությունների և ստեղծագործական



ուժերի բազմակողմանի զարգացման համար։ Միլիոնավոր սովետական կանայք, մեր ամբողջ ժողովրդի հետ միասին, հերոսական աշխատանք են կատարում կյանքի բոլոր բնագավառներում։

Ամբողջ երկրին հայտնի է Ուլյանովսկի շարժիչների գործարանի տեխնոլոգ Գալինա Զոտովայի անունը, որի բրիգադան կարճ ժամանակամիջոցում տնտեսել է այնքան մետաղ, որից կարելի է լրացուցիչ պատրաստել 300 շարժիչ։ Իրենց աշխատանքով երկրում հռչակ են ձեռք բերել նաև փականագործ Ա. Վ. Մալինինան, ջուլհակուհի Մարիա Ռոժնևան, կոշկակարուհի Մարիա Լևչենկոն, արմատուրագործուհի Մարիա Բոլդիրևան, որն աշխատում է Կույբիշևգէսում՝ որպես էլեկտրազոդող, օրական կատարելով երկու նորմա։

Համաժողովրդական պատվի ու հարգանքի են արժանացել նաև կոլտնտեսային գյուղի շատ առաջավոր կանայք։

Մեր պարտիան անդուլ հոգատարություն է ցուցաբերում կանանց կադրերի աճման և դաստիարակության գործում։ Եվ այսօր քիչ չէ այն կանանց թիվը, որոնք աշխատում են որպես գործարանների, ֆաբրիկաների դիրեկտորներ, կոլտնտեսությունների նախա-

դաններ, ինժեներներ, գիտնականներ։ Կին անվանի աշխատողների թվում հիշատակության արժանի են պատմական գիտությունների դոկտոր ակադեմիկոս Աննա Պանկրատովայի, ՀԱՄԿԽ-ի քարտուղար, սովետական կանանց Հակաֆաշիստական Կոմիտեի Նախագահ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Նինա Պոպովայի, Ն. Ս. Խրուշչևի անվան կոլտնտեսության նախագահ Գալինա Բուրկացկայայի, Կարելո-ֆիննական ՍՍՌ Սոցիալական ապահովության մինիստր Մարիա Կիրիլովայի, ՍՄԿՊ Մոսկվայի Կոմիտեի քարտուղար Ֆուրցովայի և շատ շատերի անունները։

Մեծ Լենինը կոչ էր անում՝ կանանց լայն մասսաներին մասնակից դարձնել պետական գործերի ղեկավարմանը։ Պարտիան անշեղորեն կատարում է Իլյիչի այդ ցուցումը։ 348 կանայք ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են, ավելի քան երկու հազար կանայք միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների և ավելի քան կես միլիոն կանայք՝ տեղական Սովետների դեպուտատներ են։ 2.335 կանայք ընտրվել են ժողովրդական դատավորներ և մոտ 234 հազար կանայք՝ ժողովրդական ատենակալներ։



Ավելի քան մեկ միլիոն կանայք աշխատում են լուսավորության ֆրոնտում՝ որպես դաստիարակներ։ Երկու միլիոնից ավելի կանայք աշխատում են առողջապահական հիմնարկներում և ֆիզկուլտուրայի գծով։ Մոտ մեկ և կես միլիոն կանայք սովորում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատություններում։

Գիտության դռները լայնորեն բացվել են կանանց առաջ, մոտ 3 միլիոն կանայք աշխատում են գիտության բնագավառում՝ ուսումնական և կուլտուր-լուսավորական հիմնարկներում, հազարավոր կանայք գիտությունը և տեխնիկան հարստացնում են իրենց գյուտերով ու հայտնագործություններով։ Մեծ է կանանց մասնակցությունը նաև արվեստի և գրականության ասպարեզում։

Պարտիան և սովետական պետությունը բարձր են գնահատել սովետական կանանց աշխատանքն ու հերոսությունը։ Հայրենիքին մատուցած ծառայությունների համար մոտ 2.500 կանայք արժանացել են Սովետական Միության Հերոսի և Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։ Ավելի քան մեկ միլիոն կանայք պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով և մեդալներով, 746 կանայք գյուտերի և ար-

տադրական աշխատանքի մեթոդների սիստեմատիկ կատարելագործման համար արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման։

Սովետական երկրում մայրերը շրջապատված են ընդհանուր ուշադրությամբ և հոգատարությամբ։ Երկրում ստեղծված է ծննդատների, կանանց և մանկական կոնսուլտացիաների, մանկապարտեզների և մանկամսուրների լայն ցանց։ Ավելի քան 44 հազար կանանց շնորհվել է «Հերոսուհի մայր» պատվավոր կոչում, ավելի քան չորս և կես միլիոն կանայք պարգևատրվել են «Մայրական փառք» շքանշաններով և մեդալներով։

Սովետական կանայք իրենց այդ բոլոր նվաճումների համար պարտական են իրենց հարազատ Կոմունիստական պարտիային։ Ժողովրդի լավագույն դուստրերը ակտիվ կերպով աշխատում են նաև պարտիայի շարքերում—ընդամենը պարտիայի մեջ են 1 միլիոն 414 հազար 456 կանայք։ XX համագումարի վճռական ձայնի իրավունք ունեցող դելեգատներից 193-ը կանայք են։

Ռուս, ուկրաինացի, բելոռուս, վրացի, տաջիկ և մյուս ազգերի իրենց քույրերի հետ ձեռք-ձեռքի տված, նրանց հետ համաքայլ



առաջ են ընթանում Սովետական Հայաստանի կանայք։ Հետամնաց, կիսաֆեոդալական աղքատ երկրից, որտեղ տիրում էին միայն քաղցը և որբերի լացն ու կոծը, որտեղ կինը կատարյալ ստրուկ էր, հետք անգամ չի մնացել։ Հարազատ Կոմունիստական պարտիայի վարած ազգային ճիշտ քաղաքականության շնորհիվ աճեց ու բարգավաճեց մեր ռեսպուբլիկան, որն իր արժանի տեղը գրավեց Սովետական Միության ժողովուրդների իրավահավասար եղբայրական ընտանիքում։

1913 թվականի համեմատությամբ Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը աճեց 41 անգամ։ Եթե 1914—1915 ուսումնական տարում Հայաստանում կար ընդամենը 459 դպրոց, որտեղ սովորում էր 34.738 երեխա և աշխատում 1.146 ուսուցիչ, ապա 1955—1956 ուսումնական տարում միայն մասսայական դպրոցների թիվը հասնում է 1.187-ի, որտեղ աշխատում է 18.594 ուսուցիչ և սովորում 283.100 աշակերտ (չհաշված մասնագիտական դպրոցները, ուսումնարանները և բանվորական երիտասարդության դպրոցները)։ Եթե 1913 թվականին կար միայն 6 հիվանդանոց՝ 212 մահճակալով, ապա արդեն 1954

թվականին մենք ունեինք 203 հիվանդանոց՝ 8.747 մահճակալով: Եթե 1913 թվականին կար ընդամենը 57 բժիշկ, ապա այժմ մենք ունենք 3.000 բժիշկ: Եթե 1913 թվականին չի եղել ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, ապա այժմ մենք ունենք 12 բարձրագույն ուսումնական հաստատություն, 25 գիտա-հետազոտական ինստիտուտ, գիտությունների 133 դոկտոր և 1.193 թեկնածու:

Գիտական աշխատողների 50 տոկոսը կանայք են, որոնց թվին են պատկանում քիմիական գիտությունների դոկտոր, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Արաքսի Բաբայանը, բժշկական գիտությունների դոկտոր Վերգուշ Միքայելյանը, գիտությունների դոկտորներ Տատյանա Մեշկովան, Մարգարիտ Գրիգորյանը, Դարյա Բաբայանը, Ալմա Քաթանյանը և ուրիշներ:

Մեծ է այն առաջավոր հայ բանվորուհիների և կոլտնտեսուհիների թիվը, որոնք հերոսական աշխատանք են տանում արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ: Հայ ժողովուրդը իրավամբ հպարտանում է իր լավագույն դուստրերով, որոնց թվին են պատկանում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, ՍՄԿԿ XX համագու-



մարի դելեգատ, կոլտնտեսության նախագահ Նազան Գալստյանը, Հայկական ՍՍՌ Ֆինանսների մինիստր Լարիսա Ստեփանյանը, Հայկական ՍՍՌ Կոմունալ տնտեսության մինիստր, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Նունիկ Թուխիկյանը, Ստալինյան մրցանակի լաուրեատ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, ապակետարայի ֆաբրիկայի դիրեկտոր Մարիա Բաբաջանյանը և շատ ուրիշներ:

Հայ կինը այսօր մասնակցում է պետության կառավարմանը: 7 կանայք ՍՍՌՄ Գերագույն Սովետի, 91 կանայք՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի, 4.189 կանայք՝ տեղական Սովետների դեպուտատներ են: Հայ կանանցից 275 հոգի վաստակավոր ուսուցչուհիներ են, 68-ը՝ վաստակավոր բժիշկներ, 72-ը՝ վաստակավոր արտիստներ, 20-ը ժողովրդական արտիստներ: Հայրենիքին մատուցած ծառայությունների համար 7.871 հայ կանայք պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով և 771 կանայք՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի պատվոգրերով:

Մեր ռեսպուբլիկայում «Հերոսուհի մայր» պատվավոր կոչման են արժանացել 10 և ավելի երեխա ծնած ու դաստիարակած 992

մայրեր։ 85.198 մայրեր պարգևատրվել են «Մայրական փառք» շքանշաններով ու մեդալներով։ Բազմազավակ և միայնակ մայրերին պետության կողմից մինչև 1956 թվականի հունվարի 1-ը վճարվել է 477 միլիոն 129 հազար ռուբլի նպաստ, ընդորում՝ միայն 1955 թվականին միայնակ մայրերին վճարվել է 53 միլիոն 724 հազար ռուբլի նպաստ։ Երևան քաղաքի բնակչուհի Սիրանուշ Վարդերեսյանին, որն ունի 13 երեխա, պետությունը մինչև այժմ վճարել է 36 հազար 400 ռուբլի, Նլեմա Պետրոսյանին, որն ունի 7 երեխա, 14.500 ռուբլի, իսկ Լաթիֆա Մամեդովային, որն ունի 8 երեխա, պետությունը վճարել է 18.000 ռուբլի։

Սովետական կինը երջանիկ է այսօր, իսկ վաղը երջանիկ կլինի առավել ևս։ Կատարելով վեցերորդ հնգամյակը, երբ մթերքների առատություն կլինի, երբ երեխաները կսովորեն ձրի, նախաճաշ կստանան դպրոցում, կապրեն գիշերօթիկում, երբ ատոմային էներգիան շարժման մեջ կդնի սառցահատ նավերը և կբուժի մարդկանց, երբ սովետական մարդիկ հնարավորություն կստանան աշխատելու 7 ժամ և ավելի պակաս, երբ ծերունիները կապրեն գեղատեսիլ վայրե-



րում, սովետական կինը կստեղծագործի և կաշխատի ավելի լավ։

Մեր Հայրենիքի բոլոր կանանց խնդիրն է գործադրել իրենց բոլոր ուժերը այդ դյուցազնական պլանները կատարելու և գերակատարելու համար։

Հետևելով սովետական կանանց օրինակին, նոր կյանքի կառուցմանը ակտիվ կերպով մասնակցում են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Հունգարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Բուլղարիայի, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Հարավսլավիայի ֆեդերատիվ ռեսպուբլիկայի կանայք։

Այսօր ժողովրդական դեմոկրատիայի երկըրների երջանիկ կանայք Կանանց Միջազգային օրը նշում են սոցիալիզմի կառուցման, ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում ձեռք բերած նոր հաջողություններով։

Կանանց Միջազգային օրը բոլորովին այլ պայմաններում են նշում կապիտալի երկըրների ընչազուրկ կանայք։ Այդ երկրների աշխատավոր կանանց ուսերին է ընկած սպա-

ռազինությունների մրցավազքը, սննդամթերքների գների բարձրացման, հարկերի ավելացման և գործազրկության ծանր բեռը։ Կապիտալի երկրներում կինը իրավահավասար չէ։ Բուրժուական շատ երկրներում կանանց դեռևս զրկում են ընտրական իրավունքից, կանայք տղամարդկանց հետ հավասար աշխատանքի համար 30—40 և նույնիսկ 50 տոկոսով պակաս վարձատրություն են ստանում։

Կանադայում, ինչպես հաղորդում է Ռեյտեր գործակալությունը, երեխաների վաճառք է տեղի ունենում։ Բրազիլիայում տարեկան մահանում է մեկ տարեկանից փոքր 700 հազար երեխա։ Աշխատավոր կանայք և նրանց երեխաները թշվառ վիճակում են գտնվում Ֆրանսիայում, Իսպանիայում և հատկապես գաղութային ու կիսագաղութային երկրներում։

Սակայն տարեցտարի աճում և ամրապնդվում է կանանց դեմոկրատական շարժումը։ Հանուն երեխաների կյանքի, հանուն մարդկության ապագայի՝ բոլոր երկրների կանայք միանում են ընդհանուր լագերում։ 66 երկրների ավելի քան 140 միլիոն կանայք միավորված են կանանց Միջազգային Ֆեդերացիայում. որր ամբողջ աշխարհի լավագույն



մարդկանց հետ միասին՝ պայքարում է պատերազմի հրձիգների դեմ, խաղաղության համար, ատոմային և ջրածնային զենքի արգելման համար։

Նշելով կանանց Միջազգային օրը, մեր Հայրենիքի կանայք էլ ավելի սերտորեն են համախմբվում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը։ Հանուն Սովետական Հայրենիքի նրանք լի են իրենց ստեղծագործական աշխատանքով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները կատարելու պատրաստակամությամբ։

# ԻՆՉՊԵՍ ՍՏԱՑԱՆՔ ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ

Ն. ԹԵՋՈՅԱՆ

Էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղի «Պայքար» կոլտնտեսության բրիգադիր

*Մեր կոլտնտեսությունը տարիներ շարունակ բանջարա-բոստանային կուլտուրաներից ստանում էր շատ ցածր բերք։ Շատերը այն կարծիքն էին հայտնում, թե այդ կուլտուրաներից մեզ մոտ հնարավոր չէ բարձր բերք ստանալ, ոմանք էլ առաջարկում էին ընդհանրապես հրաժարվել դրանց հետագա մշակությունից։ Եվ այդ իսկ պատճառով, մյուս կուլտուրաների շարքում, բանջարա-բոստանային կուլտուրաները բռնում էին երկրորդական տեղ և դասվում կոլտնտեսության ամենահետամնաց ու ոչ եկամտաբեր ճյուղերի շարքը։ Սակայն 1955 թվականի մեր աշխատանքի փորձը մեզ բերեց այն համոզման, որ այդ բոլոր խոսակցությունները զուրկ են եղել*



*ռեալ հիմքից և կոլտնտեսությանը երկար տարիներ զրկել են եկամտաբեր այդ արժեքավոր կուլտուրայի մշակությունից։ 1955 թվականին մեր բրիգադան, հետևելով հարևան Արագած գյուղի կոլտնտեսության բանջարա-բոստանային կուլտուրաներ մշակելու առաջավոր օրինակին, 13 հեկտար տարածությունից կոլտնտեսությանը տվեց 246 հազար ռուբլու եկամուտ։ Քանի որ այդ կուլտուրայի մշակությամբ մեր բրիգադան առաջին տարին էր զբաղվում և մենք չունեինք բարձր բերքատվության հասնելու հարուստ փորձ, մեր աշխատանքի ընթացքում մենք հանդիպեցինք մի շարք լուրջ դժվարությունների, որոնք, իհարկե, հետագայում հաղթահարվեցին։ Ավելորդ չէր լինի պատմել այն մասին, թե ինչ նոր բան մենք սովորեցինք մեր հարևան կոլտնտեսությունից և ինչպես հաղթահարելով դժվարությունները, կարողացանք հասնել բանջարա-բոստանային կուլտուրաների բարձր բերքատվության։*

*Սկզբնական շրջանում մեր առջև կանգնած ամենալուրջ հարցը՝ դա ջերմոցի տեղի ընտրությունն էր և ջերմոցային պայմաններում սածիլներ աճեցնելը։ Ջերմոցի համար մենք ընտրեցինք գյուղին մոտ գտնվող և դեպի*

հարավ թեքությամբ ընկած հողամասը, որը ցերեկվա ժամերին արևոտ լինելուց բացի, միաժամանակ պաշտպանված էր հյուսիսային քամիներից։ Երբ ջերմոցը պատրաստ էր, զբաղվեցինք հողը նախապատրաստելու հարցով։ Ջերմոցի համար մենք վերցրինք բազմամյա ցանովի խոտերով զբաղեցրած դաշտերի հողը։ Ապա նրան խառնեցինք հավասար ծավալային հարաբերություն ունեցող փտած ու մաղած գոմաղբ։ Գոմաղբով տաքացվող ջերմոցի հողի շերտը հասցրինք 13—15 սանտիմետրի։ Բույսերը զանազան տեսակի հիվանդություններից պաշտպանելու նպատակով հողը ախտահանեցինք ֆորմալինի լուծույթով (մեկ լիտր 40 տոկոսանոց ֆորմալինին ավելացնելով 50 լիտր ջուր)։

Որպեսզի ստանայինք վաղահաս պոմիդորի ու վարունգի առատ բերք, մենք ջերմոցային ցանքն սկսեցինք փետրվարի 15-ից։ Մեկ քառակուսի մետր տարածության վրա մենք աճեցրինք 280—300 սածիլ։ Համոզված լինելով, որ նշված տարածության վրա աճեցրած բույսերի այդ քանակությունը լրիվ կարող է ապահովված լինել անհրաժեշտ սննդանյութերով, լույսով և ջերմությամբ։ Եվ մենք մեր հաշիվներում չսխալվեցինք։ Ցանքից որոշ ժամանակ անց՝ ջերմոցում աճեցին



փարթամ և հարուստ արմատային սիստեմ ունեցող սածիլներ։ Երբ դրսում օդի ջերմաստիճանը արդեն հասնում էր պլյուս 22-ի՝ մենք այդ ժամանակ սածիլները փոխադրեցինք դաշտ։ Չմոռանանք ասել, որ ջերմոցային պայմաններում մեր բրիգադայի անդամները կատարել են 3—4 անգամ հանքային պարարտանյութերով սնուցում, անհրաժեշտ քանակությամբ քաղհան, փխրեցում, ջրում, օդափոխություն։ Եվ որպեսզի դաշտ տեղափոխված սածիլը լավ արմատավորվեր ու լավ սնվեր, նախորդ տարվա դեռ վաղ աշնանից բանջարա-բոստանային կուլտուրաների համար առանձնացված հողամասերում կատարեցինք ցրտահերկ, հողամասը մաքրեցինք բույսերի մնացորդներից ու քարերից, այն ժամանակին պարարտացրինք հանքային ու տեղական պարարտանյութերով։

Պոմիդորի ու վարունգի սածիլները դաշտ փոխադրելուց 8—10 օր հետո կատարեցինք առաջին քաղհան-փխրեցումը։ Ամբողջ սեզոնի ընթացքում մենք այդ աշխատանքը կրկնեցինք 3—4 անգամ։ Առաջին քաղհան-փխրեցման հետ բույսերին տվեցինք առաջին սնուցումը։ Որպեսզի պարարտանյութերը շատ քայքայվեին ու նպաստեին բույսերի աճմանն ու զարգացմանը, մենք ազոտական

կալիական ու ֆոսֆորական պարարտանյութերը լավ մանրացրինք և խառնեցինք իրար, որից հետո պոմիդորի թմբերի հողը ետ տվեցինք, յուրաքանչյուր բույսի արմատի տակ լցրինք համապատասխան քանակությամբ ֆոսֆորական պարարտանյութ, հետո այն հողի բարակ շերտով ծածկեցինք ու ջրեցինք։ Հեկտարին տրվեց 200 կիլոգրամ ազոտական, 150—200 կիլոգրամ կալիական և 250—300 կիլոգրամ ֆոսֆորական պարարտանյութ։ Հետագայում, երբ հողի քեշը եկավ՝ վար դրեցինք։ Այնուհետև մեր հետագա աշխատանքներն ընթացան տնկված տարածությունները քաղհանելու, քոլքաշ կատարելու, ժամանակին ջրելու և բերքահավաքին նախապատրաստված դիմավորելու ուղղությամբ։

Հետևելով ագրոբիոլոգիական առաջավոր գիտության նվաճումներին, պոմիդորի երեք հեկտար տարածության վրա կիրառեցինք նոր միջոցառում։ Երկու անգամ բերքահավաք կատարելուց հետո, կրկին այդ տարածությունը պարարտացրինք 150 կիլոգրամ ազոտական պարարտանյութով։ Արդյունքը եղավ այն, որ եթե երկու անգամ բերքահավաք կատարելուց հետո մենք յուրաքանչյուր հեկտարից հավաքել էինք 200 ցենտներ պոմի-



դոր, ապա լրացուցիչ սնուցում տալուց հետո այդ 3 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասավ 470 ցենտների։ Սեզոնի վերջում 9 հեկտար պոմիդորի տակ դրված հողամասի յուրաքանչյուր հեկտարից մենք հավաքեցինք միջին հաշվով 320 ցենտներ բերք, իսկ 4 հեկտար վարունգի ամեն մեկ հեկտարից՝ 195 ցենտներ վարունգ։ Եվ այդ այն դեպքում, երբ պետական պլանով նախատեսված էր պոմիդորի մեկ հեկտարից ապահովել 180 ցենտներ, իսկ վարունգից՝ 110 ցենտների բերք։

Պոմիդորի ու վարունգի բարձր բերք ապահովելը մեզ հնարավորություն տվեց ոչ միայն այս տարի մասնակցելու Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին, այլև նպաստեց մեր նյութական պայմանների բարելավմանը։ Մեր բրիգադի անդամներ Ժենիկ Հովսեփյանը, Դոնարա Թադևոսյանը, Ծաղիկ Խուդոյանը, Հասմիկ Հովհաննիսյանը և շատ ուրիշներ բարձր բերք ստանալու համար կոլտնտեսությունից լրացուցիչ վարձատրություն ստացան 3—4 հազար ռուբլու չափով։

Ամրապնդելով ձեռք բերված նվաճումները, այս տարի մեր բրիգադան պարտավորություն է ստանձնել կրկնակի չափով ընդար-

*ճակել պոմիդորի ու վարունգի ցանքա-յին տարածությունը և այդ ուղղությամբ հասնել 1960 թվականին նախատեսվող պլանին, իսկ բերքատվության տեսակետից՝ կրկնակի ու եռակի անգամ գերազանցել 1960 թվականին նախատեսված բարձր բերքատվության հասնելու պլանը: Այդ ուղղությամբ որոշ բան արդեն արված է: Առանձնացված են առանձին հողամասեր, կատարված է հողի նախացանքային մշակություն, արդեն ավարտել ենք ջերմոցային ցանքը: Վստահ կարող ենք ասել, որ պատվով կկատարենք սոցիալիստական մրցությամբ ստանձնած մեր բոլոր պարտավորությունները և երկրին կտանք ավելի շատ բանջարա-բոստանային կուլտուրաների բերք:*

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՄԱՐՏ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍ-ՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ԱՆՁՆՎԻՐԱԲԱՐ ԾԱՌԱՅՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԻՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին (1903—1953): *Հայպետհրատ, 1953:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Հաշվետու զեկուցում Պարտիայի XX համագումարին, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1956:*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 22-ի և 23-ի համարներում:*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 25-ի համարում:*

## 2. ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՊԱՐՏԻԱՅԻ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 15-ի և 16-ի համարներում։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 22-ի և 23-ի համարներում։*

## 3. ԾԱՆՐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԻՄՔԵՐԻ ՀԻՄՔՆ Է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Լավ է քիչ, բայց լավ, *Երկեր, Հատոր 33, էջ 579—599, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *մաս 2-րդ, Արդյունաբերություն և տրանսպորտ, տպագրված «Ս. Հ.»-ի փետրվարի 15-ի համարում։*



ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *մաս առաջին։*

Վեցերորդ հնգամյա պլանի հոյակապ խնդիրները, *«Պրավդա»-ի հունվարի 16-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունվարի 17-ի համարում։*

## 4. ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԲԱՐՁՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊԱՅՄԱՆ Է ՊԼԱՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԵՎ ԳԵՐԱԿԱՏԱՐՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքային կարգապահության մասին, *Երկեր, հատոր 30, էջ 558—559, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *մաս. 2-րդ. սոցիալիստական դեմոկրատիզմի զարգացումը։ Պետական ապարատի կատարելագործումը։ Սովետական օրինականության ամրապնդումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 16-ի համարում։*

## 5. ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանությունը և կնոջ դրությունը, *Երկեր, հատոր 30, էջ 131—135, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. Լենին— Բանվորուհիների միջազգային օրվա առթիվ, *Երկեր, հատոր 30, էջ 519—521, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կանանց միջազգային օրվա առթիվ, *Երկեր, հատոր 7, էջ 54—55, Հայպետհրատ, 1949։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 15-ի և 16-ի համարներում։*

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ։

## 6. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի



հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *2-րդ մաս, Գյուղատնտեսություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 15-ի համարում։*

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *մաս 4-րդ։*

Ա. Ի. ԿԻՐԻՉԵՆԿՈ— Ճառ Պարտիայի XX համագումարում, տպագրված *«Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 17-ի համարում։*

## 7. ԼԱՎ ԽՆԱՄՔՈՎ ԱՊԱՀՈՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԲԱՐՁՐ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՄՍՈՒՐԱՅԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը Պարտիայի XX համագումարին, *2-րդ մաս, անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 15-ի համարում։*

Վորոնեժի մարզի կոլտնտեսականների, կոլտնտեսուհիների, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողների, գյուղատնտեսության մասնագետների ԴԻՄՈՒՄԸ ՍՍՌ Միության գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 5-ի համարում։*

ՍՍՌՄ Միության Մինիստրների Սովետում— Անասուն կաթնամթերքների մշակումն ավելացնելու և խաղաղների ու արդյունաբերական կենտրոնների բնակչությանը կաթի մատակարարումը բարելավելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 10-ի համարում։

## 8. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻՋԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ Է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Խաղաղություն ժողովուրդներին, զեկուցում նաշտության մասին, *Երկեր, հատոր 26, էջ 57—60, 295—301, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի նաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *մաս I, Սովետական Միության միջազգային դրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 15-ի համարում։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ— Ճառ պարտիայի XX համագումարում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 24-ի համարում։*

Ուղերձների փոխանակում ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ա. Բուլգանինի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Դուայտ Էյզենհաուերի միջև, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 4-ի համարում։*

# СОДЕРЖАНИЕ





Խմբագիր՝ Գ. Ր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

26

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 5 1956 г.

ՎՖ 01020 Պատվեր 195 Տիրաժ 9000

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչու-
թյունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր
վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 50 կոպ.։